տեն, մեր սահմաններէն դուրս չնայելով, եւ ուրիշին ստացուածքը յարգելու կամքով տոգորուած, մենք ալ մեր կարգին կը պահանջենք որ նոյն յարգանքը տածեն մեզի հանդէպ»:

Ռումանիոյ արտաքին նախարարն ալ յայտարարեց իր բաժակաճառին մէջ.

— «Մենք մեր համաձայնութիւնը կոչած ենք այն լեռնաշղթային անունով որ կը գտնուի մեր երկիրներուն միջեւ: Բայց Պալքանները երբեք վճռական ազդեցութիւն մը չեն գործած ոչ Եուկոսլավիոյ վրայ որ այսօր կ'երկարի մինչեւ Ալպեաններու սահմանը, ոչ Ռումանիոյ վրայ, որուն ժողովուրդը կ'ապրի Կարպաթներու երկու սարալանջերուն վրայ, ոչ Թուրքիոյ վրայ որ իր լեռներն ունի Փոքր Ասիոյ մէջ, ոչ ալ վերջապէս Յունաստանի վրայ որուն ստորոտները միշտ Ողիմպոս բնակած են: Եթէ հարկ ըլլար մեր համաձայնութիւնը դնել պաշտպան լերան մը խորհրդանշանին տակ, մենք պիտի ընտրէինք ամէնէն փոքրը,— այն որուն ստորոտը ձեզի հանդիպելու հրճուանքն ունինք եւ որ, հակառակ իր համեստ բարձրութեան, աւելի քան երեք հազար տարիէ ի վեր կ'իշխէ բոլոր կատարներուն վրայ: Մենք վճռած ենք հաւատարիմ մնալ անոր վարպետներուն եւ աշակերտներուն աւանդած դասերուն,—անձնուիրութիւն հանրային դատին եւ հայրենիքի ազատութեան: Մեր միութիւնը նուիրուած է մեր հայրենի ժառանգութեան, մեր երկիրներու անկախութեան եւ խաղաղութեան դատին պաշտպանութեան: Անդարայի տեսակցութիւնները հաստատեցին մեր համաձայնութեան արժէքը»:

*** Գերմանական եւ իտալական թերթերը շարունակելով քննադատել Ռումանիոյ վարած քաղաքականութիւնը, կը հարցնեն թէ «ո՞ւր երթալ կ'ուզէ այդ երկիրը»: Պ. Գաֆէնքօ ակնարկութիւն ըրած ըլլալով Թուրքեւռումանական դաշինքի մասին, «Թրիպունա» դիտել կու տայ թէ Եւրոպայի ներկայ կացութեան մէջ դաշինքը ուրիշ իմաստ չունի եթէ ոչ զինակցութեան: «Միւս կողմէ, Տնիէսթէրի ձախ ափին վրայ դարանի կեցած է Ռուսիա, Պուլկարիա կը պնդէ իր պահանջներուն վրայ Տոպրուճայի մասին, Հունգարիա կ'արծարծէ փոքրամասնութեանց խնդիրը, ուրեմն Ռումանիա հարկադրուած է արթուն կենալ: Ան պէտք է յիշէ Չեխոսլովաքիոյ ճակատագիրը... Իր կապակցութիւնը Ֆրանսայի եւ Անգլիոյ հետ կրնայ աղէտալի փորձանքներ բերել իր գլխուն»:

## Փոքր յանցանքները պիտի ներուին

»»» · «««

Երեսփ. ժողովը ուրբաթ օր նորէն քննելով ներման օրինագիծը, քուէարկեց անոր Բ. յօդուածը, որ ահաւասիկ.—

«Տասներկու ամսուան ընթացքին, սկսելով ներկայ օրէնքին հրատարակութեան թուականէն, թէեւ յանցաւորները եւ անոնք որ 1939 մայիս 10էն առաջ գործուած օրինազանցութեանց համար դատապարտուած են տուգանքի, կամ, տուգանքով թէ առանց տուգանքի առ առաւելն մէկ ամիս բանտարկութեան, եւ կամ առ առաւելն երեք ամիս բանտարկութեան՝ յետաձգումով (սիւրսի), պիտի կրնան օգտուիլ ներումէն»:

Ժողովը քուէարկեց նաեւ ուրիշ յօդուած մը որուն տրամադրութեամբ ներումէն պիտի օգտուին կարգ մը օրինազանցութիւններ՝ 1938 մայիսի, յունիսի, հոկտեմբերի եւ դեկտեմբերի հրամանագիրներուն դէմ (օտարականներու մասին):

## Գերմանիոյ զինուորական շարժումները Սլովաքիոյ մէջ

Հակառակ գերմանական հերքումներուն՝ անգլիական եւ ամերիկեան թերթերը կը շարունակեն գրել, թէ Գերմանիա զինուորական կեդրոնացումներ կը կատարէ Սլովաքիոյ մէջ: «Նիւ Եորք Թայմզ» կը հաղորդէ, թէ արդէն նշանակուած են Սլովաքիոյ սահմանագլուխին վրայ կեդրոնացող զօրամասերը եւ անոնց հրամանատարները: Լեհական սահմանէն 45 մղոն հեռու՝ Քուսբինի մէջ եւս հաստատուած է զինուորական կայան մը, որուն հրամանատար կարգուած է Զօր. Ֆոն Րունտշթէտ: Զօր. Ֆոն Վիթէրշայմ արդէն հասած է Սլովաքիոյ մայրաքաղաքը՝ Պրաթիսլավա: Կը կարծուի թէ այս կարգադրութիւններուն նպատակն է գրաւել Սլովաքիան:

## Իտալ. ռազմանաւերը սպանիական ջուրերու մէջ

Պաշտօնապէս կը հաստատուի թէ իտալական տորմիղը ռազմափորձեր պիտի կատարէ սպանիական, փորթուկալեան եւ մարոքեան ջուրերու մէջ: Պիտի մասնակցին աւելի քան հարիւր ռազմանաւեր ու ընդծովեաներ: Ռազմափորձերը պիտի տեւեն քանի մը շաբաթ:

Զօր. Ֆրանքօ հեռագիր մը ուղղեց Մուսոլինիի եւ յայտնեց իր երախտագիտութիւնը՝ իտալացի լեգէոնականներու կատարած դերին համար Սպանիոյ մէջ: Այս հեռագիրը այնպէս է խմբագրուած, որ ենթադրել կու տայ, թէ Զօր. Ֆրանքօ պիտի այցելէ Հռոմ: Իր հեռագրին մէջ զօրավարը կ'ըսէ.— «Իմ ներքին գործերու նախարարս ձեզի բերաւ իմ եւ Սպանիոյ ողջոյնները: Կը յուսամ թէ անձնապէս չփում ունենալու պատեհութիւնը, որուն այնքան կը բաղձամ, պիտի ներկայանայ մեզի» եւն.:

## Ազգ. վիճակահանութեան պարգեւները

Ազգ. պարգեւախաղի 10րդ շարքին վիճակահանութիւնը տեղի ունեցաւ ուրբաթ գիշեր, Էյֆէլի աշտարակին մէջ, անոր 50ամեակին առթիւ: Ելեկտրական գունդերը տեղաւորուած էին լուսաւոր պաստառի մը մօտ, որուն վրայ կը կարդացուէին շահող թիւերը, շատ հեռուէն:

Հինգ միլիոնի մեծ պարգեւը շահեցաւ 047,529 թիւը:

Հետեւեալ չորս թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 1,000,000 ֆրանք.— 978,050, 977,591, 633,397, 282,011:

Հետեւեալ վեց թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 500,000 ֆրանք.— 769,864, 1,168,103, 1,106,334, 944,317, 617,174, 458,754:

Հետեւեալ վեց թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 200,000 ֆրանք.— 143,351, 1,485,215, 385,074, 058,055, 706,281, 311,371:

63063, 99657, 57534, 92011, 89958 եւ 76527 վերջացող թիւերը շահեցան 100,000 ֆրանք:

74969, 06811, 40792, 15411, 71259, 14859 վերջացող թիւերը շահեցան 50,000 ֆրանք:

9954, 5715, 3300, 4550, 6328, 2468 վերջացող թիւերը շահեցան 20,000 ֆր.:

367 վերջացող թիւերը շահեցան 10,000 ֆրանք:

754 վերջացող թիւերը շահեցան 5000 ֆրանք:

519 վերջացող թիւերը շահեցան 2000 ֆրանք:

27 վերջացող թիւերը շահեցան 220 ֆրանք:

2 վերջացող թիւերը շահեցան 110 ֆրանք:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՈՃՐԱԳՈՐԾ ՎԱՅՏՄԱՆ գլխատուեցաւ երէկ, շաբաթ, առտուան ժամը 4.30ին, Վերսայլի մէջ: Վերջին ժամերուն կը կարդար «Նմանութիւն Քրիստոսի» գիրքը, կ'աղօթէր եւ կը խնդար:

ԷՅՖԷԼԻ ԱՇՏԱՐԱԿԻՆ 50ամեակին առթիւ, թղթատարական մասնաւոր սպասարկութիւն մը հաստատուեցաւ մինչեւ յունիս 23: Օդապարիկ մը պիտի փոխադրէ «քարդ-փոստալ»ները, գինը՝ 7 ֆրանք 50:

ԱԶԳ. ՊԱՐԳԵՒԱԽԱՂԻՆ 11րդ վիճակահանութիւնը պիտի կատարուի յուլիս 1ին, Նանթի մէջ:




Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN)

17, Rue Damesme . . Paris (13)

